Պրոլետարներ բոլոր յերկրների,
միացե՛ք!

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
և ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 15 (22)

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն «Խ. Հայաստան»
ԵՐԵՎԱՆ—1937

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 15 (22)



ՀԿ(բ)ԿԿԿ հրատարակչություն—«Սով. Հայաստան»
ԵՐԵՎԱՆ — 1937

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագիր՝ ԳԻՆՈ ՇԱՂԳԱՄՅԱՆ
Սրբագրիչ՝ Մ. ՍՈՒՐՅԱՆ
Հրատարակ. № 17, պատվ. № 118
Գլավլիտի լիազոր Շ—1254
Տիրաժ 6784

ՀԿ(բ)ԿԿ հրատ. «Խորհրդային Հայաստան»-ի տպարան, Յերևան


Ա. ՎԻՇԻՆՍԿԻ

# ՈՏԱՐԵՐԿՐՅԱ ՀԵՏԱԽՈՒԶԱԿԱՆ ՄԱՐՄԻՆՆԵՐԻ ՅԵՎ ՆՐԱՆՑ ՏՐՈՑԿԻՍՏԱԿԱՆ ԱԶ ԳՈՐԾԱԿԱԼՈՒԹՅԱՆ ԳՈՐԾՈՒՆԵՅՈՒԹՅԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՄԵԹՈԴՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Մեր կուսակցության Կենտկոմի սույն թվի մարտի 3–5 պլենումում տված իր զեկուցման մեջ ընկ. Ստալինը, խոսելով մեր աշխատանքի թերությունների դեմ պայքարելու խնդիրների, այդ թերությունները վերացնելու մասին, խոսելով այս ուղղությամբ անհրաժեշտ միջոցառումների մասին, ընդգծեց այն հանգամանքը պարզա-*

բանելու անհրաժեշտությունը, թե տնտեսական ոչ մի հաջողություն, որքան էլ մեծ լինեն դրանք, չեն կարող ոչնչացնել կապիտալիստական շրջապատման փաստը և այդ փաստից բխող հետևանքները:

Նույն այդ զեկուցման մեջ ընկ. Ստալինը մատնանշեց, թե անհրաժեշտ է միջոցներ ձեռք առնել, «որ մեր ընկերները, կուսակցական և անկուսակցական բոլշևիկները, հնարավորություն ունենան ծանոթանալ օտարերկրյա հետախուզական մարմինների վնասարարական– դիվերսիոն և լրտեսական աշխատանքի նպատակների ու խնդիրների, պրակտիկայի և տեխնիկայի հետ»:

Օտարերկրյա հետախուզությունների և նրանց գործակալ տրոցկիստների, աջերի, մենշևիկների, էսէրների և այլն և այլն՝ գործակալության մեթոդները, յեղանակները, ձևերը խիստ բազմազան են: Դրա մասին կարելի յե գաղափար կազմել արդեն իսկ այն հայտնի փաստերից, որոնք ընկ. Ուրանովի «Օտարերկրյա հետախուզությունների հավաքագրման աշխատանքի մի քանի նենգ միջոցների մասին» բրոշյուրից, այն հոդվածներից, որ տպագրվում են



«Պրավդա»–յում, և այն նյութերից, որ մենք ունենք այն մի ամբողջ շարք դատավարությունների կապակցությամբ, որոնք մեր աչքի առաջ կատարվեցին: Բոլորը հիշում են Կեմերովյան գործը: Դեռ բոլորի հիշողության մեջ թարմ են վերջին յերեք դատավարությունները, որոնցից մեկն անցկացվեց դատական դռնփակ նիստում՝ այն է միացյալ տրոցկիստական–զինովյեվական կենտրոնի, հակախորհրդային տրոցկիստական կենտրոնի դատավարությունները և Տուխաչեվսկու, Յակիրի, Ուբորեվիչի և ուրիշների գործին վերաբերող պրոցեսը:

Այդ հոդվածներն ու նյութերը, որ հրապարակվել են թերթերում և առանձին բրոշյուրներով, կարող են բավարար նյութ ծառայել տվյալ թեմայի մեջ կողմնորոշման համար: Սույն հոդվածի նպատակը որոշ լրացուցիչ նյութեր տալն է:

Անհրաժեշտ է ընդգծել մեր, յեթե այսպես կարելի յե անվանել, ներքին հակահեղափոխության առանձնահատկությունը: Այդ այն է, որ ԽՍՀՄ–ի ներսում հակահեղափոխական խմբերի գործունեությունն օրգանապես կապված է նույն այն կապիտալիստական շրջապատի հետ, որի մասին

ևս մի անգամ հիշեցրեց մեզ ընկեր Ստալինը ՀամԿ(բ)Կ Կենտկոմի վերջին պլենումում:

Մեր յերկրում բուրժուական հակահեղափոխության պատմությունը խոսում է այդ հակահեղափոխության բնույթի համար ծայր աստիճան կարեվոր և վճռական նշանակություն ունեցող մեկ առանձնահատկության մասին, վորը կայանում է նրանում, վոր մեր յերկրում վոչ մի հակահեղափոխական, հակախորհրդային խումբ, սոցիալիզմի գործի դեմ, խորհրդային կառավարության դեմ, կուսակցության ու նրա ղեկավարության դեմ վոչ մի հակահեղափոխական, հակախորհրդային յելույթ մեր Միության 20-ամյա գոյության ամբողջ ընթացքում յերբեք բուրժուական ֆաշիստական հետախուզությունների կենտրոններից վորևէ մեկից չի յեղել մեկուսացած, վորևէ մեկի հետ չի յեղել չկապված:

ԽՍՀՄ-ի ներսում բուրժուական հակահեղափոխության առանձնահատկություններից մեկը հետեվապես կայանում է նրանում, վոր դա իր բոլոր թելերով և իր պրակտիկ գործունեյության յուրաքանչյուր



քայլով կապված է ոտարերկրյա հակահեղափոխական ֆաշիստական կենտրոնների, այս կամ այն կապիտալիստական պետության հակահեղափոխական ոտարերկրյա հետախուզությունների շտաբների հետ, կապիտալիստական յերկրների, առանձնապես ֆաշիստական գլխավոր շտաբների յերկրորդ բաժինների հետ:

Դա պատահական չէ: Բուրժուական հակահեղափոխության դեմ մղած պայքարում դրա վրա բազմաթիվ անգամ ուշադրություն են հրավիրել և՛ Լենինը, և՛ Ստալինը:

1921 թվին Լենինն ասում եր. «Մենք շրջապատված ենք համաշխարհային բուրժուազիայի կողմից, վորը հսկում է և սպասում տատանման յուրաքանչյուր րոպեյի, վորպեսզի հետ դարձնի «յուրայիններին», վորպեսզի վերականգնի կալվածատերերին ու բուրժուաներին»[1]):

Արդեն իսկ 1921 թվին Լենինը բաց արավ մեր ներքին հակահեղափոխության և միջազգային հակահեղափոխության միջև գոյություն ունեցող որգանական կապը, ընդգծելով այն փաստը, վոր մեզ շրջապա-

1) Լենին, Յերկեր, հ. 26, եջ 497:

տող բուրժուազիան, նրա արտահայտությամբ, հսկում և սպասում է տատանման յուրաքանչյուր րոպեի, վորպեսզի վերադարձնի կորցրած տիրապետությունը, կորցրած դրախտը, վորի մեջ գտնվում եյին կապիտալիստները, յերբ իշխանությունը նրանց ձեռքն եր:

1922 թ. Կոմինտերնի 3-րդ կոնգրեսին Լենինը խոսում եր հակահեղափոխության տարբեր շարժումների և յելույթների մասին՝ ուղղված Խորհրդային Միության դեմ, «Այդ մարդիկ բազմազիմի փորձեր են անում, ասում եր նա, նրանք շատ ճարպիկ կերպով ոգտագործում են ամեն դեպք, վորպեսզի այս կամ այն ձևով հարձակվեն Խորհրդային Ռուսաստանի վրա և մասնատեն նրան»[1]:

Այսպես եր խոսում նա հակահեղափոխական սպիտակ եմիգրանտական շրջանների մասին, այսպես եր խոսում նա այն առանձին խմբերի մասին, վորոնք կապված եյին այս սպիտակ եմիգրանտական շրջանների հետ և աջակցում եյին նրանց.

Յեվ դա մնում է այն պայքարի առանձ-

1) Լենին, Յերկեր, հ. 26, եջ 646:



նահատկությունը բնորոշող հիմնական կանոն, հիմնական գիծ, վոր մղում են մեր դեմ հակահեղափոխական ուժերը.

1929 թվին կուսակցության Կենտկոմի պլենումում ՀամԿ(բ)Կ մեջ աջ թեքման մասին արտասանած իր ճառի մեջ ընկեր Ստալինն էլ ընդգծեց մեր թշնամիների մեր դեմ մղած հակահեղափոխական պայքարի հատկապես այս առանձնահատկությունը.

Խոսելով վնասարարության, վորպես զարգացող սոցիալիզմին դիմադրելու ամենավտանգավոր ձևերից մեկի մասին, ընկեր Ստալինն ընդգծեց, վոր վնասարարությունն ե՛լ ավելի վտանգավոր է, քանի վոր նա կապված է միջազգային կապիտալի հետ:

Հիշեցնեմ, վոր կուսակցության 16-րդ համագումարում, շոշափելով աճման դժվարությունները, դասակարգերի պայքարի և ամբողջ ճակատով հարձակվելու հարցը, ընկեր Ստալինն ուղղակի ասում եր, վոր մեռնող դասակարգերի դիմադրությունն արտաքին աշխարհից մեկուսացած տեղի չի ունենում, այլ աջակցություն է գտնում կապիտալիստական շրջապատում, և

բացատրեց, թե ինչ է կապիտալիստական շրջապատումը:

«Կապիտալիստական շրջապատում— դա նշանակում է, թե ԽՍՀՄ-ի շուրջը կան դասակարգային թշնամի ուժեր, վորոնք պատրաստ են աջակցելու մեր դասակարգային թշնամիներին ԽՍՀՄ-ի ներսում՝ թե բարոյապես, թե նյութապես, թե ֆինանսական բլոկադայի միջոցով, թե, դեպքը բերելիս, ռազմական ինտերվենցիայի միջոցով: Ապացուցված է, վոր մեր մասնագետների վնասարարությունը, կուլակության հակախորհրդային ելույթները, մեր ձեռնարկությունների ու կառուցումների հրկիզումներն ու պայթեցումները դրամապես ոժանդակվում ու ներշնչվում են դրսից: Իմպերիալիստական աշխարհը շահագրգռված չէ, վոր ԽՍՀՄ վոտքի կանգնի ու հնարավորություն ունենա հասնելու և անցնելու կապիտալիստական առաջավոր յերկրներից: Այստեղից ել՝ նրա ոգնությունը հին աշխարհի ուժերին ԽՍՀՄ-ում[1]):

Այսպիսիք են այն հիմնական տարրերը,

[1]) Ստալին, «Լենինիզմի հարցերը» Կուսհրատ 1935 թ., եջ 481-2:



վոր կապում են կապիտալիստական շրջապատումը ներքին հակահեղափոխության հետ, ներքին հակախորհրդային ուժերի հետ: Դա բարոյական կապ է,— վորը վորոշակի արտահայտվեց ԽՍՀՄ-ում կալվածատերերի և կապիտալիստների իշխանության վերականգնման ծրագրի մեջ, և դա վերջնականապես ջնջեց աջերի և տրոցկիստների միջև յեղած սահմանները, յերկուսին ել հակահեղափոխության նեխած ճահիճ, մարդասպանների, փաշիստական գործակալների լպիրշ բանդա դարձրեց: Մյուս կողմից դա նյութական կապ է, յերրորդ կողմից— դա ԽՍՀՄ-ի վրա հարձակման ծրագրեր են, ֆինանսական բլոկադի և ռազմական ինտերվենցիայի ձըգտում է:

Ընկեր Ստալինն ասում եր, վոր մասնագետների վնասարարական գործունեյությունը, կուլակության հակահեղափոխական ելույթները, մեր ձեռնարկությունների և կառուցումների հրկիզումն ու պայթեցումները դրամական ոժանդակություն են ստանում ու ներշնչվում են դրսից:

Պետք է նկատի ունենալ, վոր անգամ այն ժամանակ ել, յերբ դիվանագիտական

նորմալ հարաբերություններ կան ԽՍՀՄ և կապիտալիստական տարբեր երկրների միջև, մենք ապահովված չենք մեր երկրում այդ երկրների հետախուզական մարմինների ամեն տեսակ հանցավոր գործունեությունից: Ընկեր Ստալինը մատնանշեց, վոր կապիտալիստական տարբեր երկրների միջև գոյություն ունեցող հարաբերությունները հատուկ որենքով են վորոշվում:

Այդ որենքն այժմ էլ է գործում: Դա կայանում է նրանում, վոր այդ պետություններից յուրաքանչյուրը, չնայած բարի-դրացիական կամ բարյացակամ հարաբերությունների ամեն տեսակ արտաքին ձևերին, չի մոռանում, թե պատմական այս կամ այն մոմենտին կարող է ռազմական ընդհարում տեղի ունենալ և, հետևապես երբեք աչքաթող չի անում հիմնական խնդիրը՝ պատրաստ լինել հաղթական պատերազմի իր հարևանի դեմ, այն պետության դեմ, վորի հետ դիվանագիտական վորոշ հարաբերությունների մեջ է գտնվում ինքը:

Պատերազմում սովորաբար շահում է վոչ միայն նա, ով բոլորից լավ է կարողանում



կռվել: Պատերազմում շահում է նա, վորը բոլորից ավելի լավ, իր հակառակորդից ավելի լավ է կարողանում պատերազմի նախապատրաստվել:

Իսկ պատերազմի նախապատրաստման մեջ վճռական դեր է խաղում թիկունքի վիճակը: Դրանով է բացատրվում այն, վոր նույնիսկ այն ժամանակ, երբ բուրժուական առանձին պետությունների միջև ամենաբարեկամական հարաբերություններ կան, նույնիսկ այն ժամանակ, երբ նրանք միմյանց հետ միացած են զանազան «սրտագին համաձայնություններով»— այդ պետությունների միջև եղած հարաբերությունների հիմքում դրված է գայլային այն որենքը, վորը պարտավորեցնում է պետություններից յուրաքանչյուրին հետամտել մյուսին՝ բարենպաստ մոմենտին «սրտագին» հարևանին կործանիչ հարված հասցնելու համար:

Ընկեր Ստալինն ասում էր, վոր այդպիսին է կապիտալիստական երկրների փոխհարաբերությունների որենքը:

Յուրաքանչյուր պետություն հոգ է տանում, վոր իր և իր հարևանի միջև պատերազմ ծագելու դեպքում հնարավորու-

թյուն ունենա իր հակառակորդի թիկունքը պայթեցնել, թուլացնել և խախտել իր թշնամու հզորությունը:

Դրա համար էլ հիմք չկա կարծելու, թե վոչ միայն այն պետությունները, վորոնք բացահայտ թշնամական և անբարյացակամ են տրամադրված դեպի մեզ, այլ և այն պետությունները, վորոնք մեզ հետ հաշտ հարաբերություններ ունեն, կղեկավարվեն այլ օրենքով, քան գայլային օրենքն է, վոր սովորական է կապիտալիստական յերկրների համար:

Կապիտալիստական յերկրները խարսխըված են շահագործման ամրացման, մշտընջենացման միասնական հիմքի վրա: Յեվ յեթե այսպես լինելով հանդերձ նրանց փոխադարձ հարաբերությունները պայքարի և միմյանց հետամտելու գայլի օրենքով է վորոշվում, ապա ինչ վերաբերմունք պիտի ունենան նրանք դեպի մեր պետությունը, վորը հետևողական պայքար է մղում հանուն սոցիալիզմի, հանուն կապիտալիզմի վերջնական ջախջախման, հանուն սոցիալիզմի վերջնական հաղթանակի մեր յերկրում, հանուն իսկական դեմոկրատիայի և կուլտուրայի հաղթանակի ամբողջ



աշխարհում: Ի՞նչ հիմքեր կան կարծելու, վոր մեր նկատմամբ կապիտալիստական այս պետությունները վարքի այլ կանոններով, այլ օրենքներով կղեկավարվեն:

Պարզ է, վոր այսպիսի պնդումն անելու վոչ մի հիմք չկա:

Յեվ ընկեր Ստալինն այդ հիման վրա յել նախազգուշացնում եր, թե կապիտալիստական պետությունները լրտեսներ ու դիվերսանտներ ել ավելի մեծ թվով կուղարկեն, քան նրանք ուղարկում են մեկը մյուսի մոտ: Դա միանգամայն բնական է, դա ուղղակի բղխում է կոմունիզմի համար մեր մղած պայքարի բնույթից, այն բանից, վոր մենք համաշխարհային սոցիալիստական շարժման ամրոցն ու պատվանդանն ենք հանդիսանում, այն բանից, վոր մեր յերկիրն այն բոլոր ձգտումների ամրոցն ու հենարանն է հանդիսանում, վորոնք ուղղված են լավագույն, յերջանիկ և կուլտուրական հասարակության հաստատելուն:

Դա բնական է, վորովհետեվ մեր յերկիրը վոչ միայն մի այնպիսի յերկիր է, վորում հաղթանակել է սոցիալիզմը, այլև մի այնպիսի յերկիր է, վորն արագ կերպով

զարգանում է յերկրագնդի մեկ վեցերորդ մասում և առանց բացառության բոլոր կապիտալիստական յերկրների ճնշված աշխատավորների միլիոնավոր մասսաներին վոգեվորում է սոցիալիզմի համար մղվող պայքարում։

Դրա շնորհիվ մեր յերկիրն անխուսափելիորեն մեր թշնամիների ամեն տեսակ ագրեսիվ տենչերի ոբյեկտն է հանդիսանում։

Ահա թե ինչու ընկեր Ստալինը հարց դրեց.— «Ավելի ճիշտ չէ՞ լինի մարքսիզմի տեսակետով, յենթադրել, վոր Խորհրդային Միության թիկունքը բուրժուական պետությունները պետք է յերկու- յերեք անգամ ավելի վնասարարներ, լրտեսներ, դիվերսանտներ և մարդասպաններ ուղարկեն, քան վորեվե բուրժուական պետության թիկունքը։

Պարզ չէ՞ արդյոք, թե քանի գոյություն ունի կապիտալիստական շրջապատումը, մեզ մոտ գոյություն կունենան ոտար պետությունների գործակալների կողմից մեր թիկունքն ուղարկած վնասարարները, լրտեսները, դիվերսանտները և մարդասպանները»։

Այնուհետև ընկեր Ստալինն ասում է.



«Այս բոլորը մոռացություն են տվել մեր կուսակցական ընկերները և, մոռանալով այդ մասին, հանկարծակիի յեկան։

Ահա ինչու ճապոնա-գերմանական ֆաշիստական պահնորդության տրոցկիստական գործակալների լրտեսական – դիվերսիոն աշխատանքը մեր ընկերների մի քանիսի համար միանգամայն անսպասելի յե»[1])։

Կապիտալիստական շրջապատը նշանակում է, վոր ԽՍՀՄ-ի շուրջը գոյություն ունեն մեզ թշնամական դասակարգային այնպիսի ուժեր, վորոնք պատրաստ են աջակցել մեր դասակարգային թշնամիներին ԽՍՀՄ-ի ներսում, ինչպես ասում եր ընկեր Ստալինը, և՛ բարոյապես, և՛ նյութապես, ընդհուպ մինչև մեզ վրա պատերազմական հարձակում գործելը, մինչև ռազմական ինտերվենցիան։

Ընկեր Ստալինի այս ցուցումը լիակատար չափով հենվում է պատմական անհերքելի փաստերի վրա։

Հիշենք, օրինակ, շախտիի գործը, վորում արտացոլվեցին մեր թշնամիների դասակարգային դիմադրության այն ձևերը,

---

1) Ստալին, զեկուցում ՀամԿ(բ)Կ Կենտկոմի 1937 թ. մարտի 3-ի պլենումում։

վորոնք բնորոշ եյին այդ ժամանակաշրջանում: Մեր թշնամիներն այդ ժամանակ հիմնական մեթոդ եյին ընտրել մեր տնտեսությանն ամեն տեսակ վնաս հասցնելը, Դոնբասը, մեր քարածխային ամբողջ տնտեսությունը քայքայելու և դրանով հենց մեր ժողովրդական տնտեսությունը պայթեցնելու փորձերը:

Շախտիի գործի մասնակիցների գործունեյության կենտրոնում դրված եյին, ինչպես նրանք եյին ասում իրենց ցուցմունքներում, ընդհանուր ճգնաժամ կազմակերպելը: Այդ հաշվով ել նրանք կառուցել եյին իրենց ամբողջ պայթեցման գործունեյությունը մեր ժողովրդական տնտեսության նկատմամբ:

Սակայն շախտիի գործի մասնակիցների վնասարարությունն այդ պայքարի մեթոդներից մեկն եր միայն: Պայքարի իսկական արմատներն ավելի խորն եյին ու ավելի բարդ, քան անարժեքավոր հանքաշերտերի հասարակ թագցնումը, այդ հանքաշերտերը մշակելուց հրաժարվելը, կապիտալները մեռցնելը, դրանք պակաս արժեքավոր ածխաշերտերը շպրտելը, հանքահորերը վողո-



ղելը, գործիքները կոտրելը, դիվերսիոն գործողությունները և այլն և այլն:

Այդ պայքարի դրդապատճառները, վոր վարում եյին շախտիի գործի մասնակիցները ինժիներա-տեխնիկական հին կադրերի մի խմբակի ղեկավարությամբ, շատ ավելի խորն եյին: Պետք ե ընդգծել, վոր շախտիի դավադրության մեջ հիմնական ուժը պատկանում եր մի շարք տարբերկրյա կապիտալիստների, վորոնք հայտնի եյին դեպի ԽՍՀՄ-ն իրենց տածած ատելությամբ և վորոնք բուրժուազիայի՝ մեր Խորհրդային Միության նկատմամբ առավել ագրեսիվ մասն եյին ներկայացնում: Նրանք գլխավորում և քարոզում եյին, թե անխուսափելի յե ԽՍՀՄ-ի դեմ ինտերվենցիայի կազմակերպումը:

Այդպիսիք եյին Ռեմոն, Բուրասը, Սանսեն, վերջապես լեհ հայտնի, խոշոր, գործարար և արդյունաբերող Դվարժանչիկը: Ռեմոն՝ Բերեստովո – Բոգուգուխովյան շրջանի բաժնետիրական ընկերության դիրեկտորն եր: Նա անմիջականորեն կապված եր այս դավադրության գլխավոր կազմակերպիչներից մեկի՝ ինժեներ Շադրինի հետ: Սանսեն՝ «Ռուսաստանի հարավում

քարածուխ ու աղ մշակելու բաժնետիրական ընկերության» ղեկավարն էր: Դվորժանչիկը շատ մեծ դեր խաղաց շախտիի դատավարությունը կազմակերպելու մեջ: Մինչև Հոկտեմբերյան հեղափոխությունը նա Դոնեց- Գրուշևյան բաժնետիրական ընկերության դիրեկտոր- կարգադրիչն էր, իսկ հետո՝ արտասահմանյան «Դոնբասի լեռնարդյունաբերական ձեռնարկությունների նախկին դիրեկտորների և սեփականատերերի լեհական միության» գլխավոր տերն ու տնօրենն էր:

Այս բոլոր մարդիկ, վորոնք Լեհաստանի, Ֆրանսիայի, Անգլիայի խոշոր բուրժուազիայի շահերն եյին ներկայացնում, ինչպես օրինակ հայտնի Դետերդինգը, վոչ միայն հարց եյին դնում այս կամ այն հանքահորը վնասելու մասին՝ քարածուխի հանույթը հետ պահելու, անգամ քարածրխային տնտեսությունը քայքայելու մասին: Նրանք այդ վնասարարությունը վորպես մի այնպիսի իրենց համար հարմար յեղանակ եյին համարում, վորով կարող եյին ԽՍՀՄ վրա պատերազմական հարձակման դեպքում, ինտերվենցիայի դեպքում պայթեցնել մեր թիկունքը: Յեվ իսկապես,



շախտիի գործի մասնակիցների վնասարարական ամբողջ աշխատանքի միջով կարմիր թելով անցնում եր ԽՍՀՄ-ի դեմ ռազմական կրկրյա ինտերվենցիայի նախապատրաստումը, վորը ծրագրված եր անել 1928 թվի աշնանը:

Դվորժանչիկը կապված եր և լրտեսական գրագրություն ուներ Դոնքարածուխի նախկին տեխնիկական դիրեկտոր ինժեներ Բոյարշինովի հետ, նույն այն Բոյարշինովի հետ, վորը շախտիի գործով 10 տարվա ազատազրկման դատապարտվելով, հետագայում զղջաց, զինաթափվեց, պայքարեց տրոցկիստների դեմ և տրոցկիստական բանդայի զոհը դարձավ: Այս բանդան Շեստովի ղեկավարությամբ սպանեց Բոյարշինովին, վորովհետեվ նա սպառնում եր մերկացնել տրոցկիստական հանցագործությունները Արևմտյան Սիբիրում:

Շախտիի գործի մասնակիցները գործում եյին ուղղակի կապ պահպանելով սպիտակ գվարդիական արտասահմանյան կազմակերպությունների հետ, արտասահմանյան «Հին Ռուսաստանի վարկատուների ընկերության» հետ, կապ ունեյին «A·E·G·», «Ելեկտրականության ընդհանուր ընկերու-

թյան» հետ և կապված եյին գերմանական զինվորականության շրջանների հետ: Բուն «A·E·G·»-ում, առևտրական այս ֆիրմայի մեջ, գոյություն ուներ մի բաժին, վորը բացահայտ կերպով «ռուսական բաժին» եր կոչվում: Այս «ռուսական բաժնի» ղեկավարը Բաշկինն եր, այն Բաշկինի յեղբայրը, վորը Շախտիի դավադրության կազմակերպիչն եր: «A·E·G·» այս «ռուսական բաժինը» ըստ եյության վոչ այլ ինչ եր, բայց յեթե համապատասխան տարբերկրյա հիմնարկության լրտեսական գործակալությունը:

Շախտիի դավադրության հաջողության ամբողջ հույսը դրված եր ինտերվենցիայի իրագործման վրա, վորին պիտի մասնակցեյին վոչ միայն ամեն տեսակի սպիտակապայական խմբերը, այլև դրան պիտի ուղղակի կերպով աջակցեր կապիտալիստական զինվորականությունը, այսինքն օտար վորոշ պետությունների բացահայտ զինված ինտերվենցիայի ոգնությունը:

Այլ պատկեր չուներ նաև մի քանի տարի անց բացված «Արդյունաբերական կուսակցության» (Ռամզինի, Լարիչևի և մյուսների) գործը: Այս բոլոր Ռամզինները,



Ֆրենիկովները, Չարնովսկիները, Լարիչևները և այս գործի մյուս «հերոսները» անմիջապես կապված եյին Ռյաբուշինսկու և Լիանոզովի, արտասահման փախած այդ խոշորագույն կապիտալիստների հետ: Նրանք անմիջական կապ ունեյին տարբերկրյա կապիտալիստների այն խմբերի հետ, վորոնք առավել թշնամական վերաբերմունք ունեյին դեպի ԽՍՀՄ: Հայտնի յե, վոր այդ ժամանակ ֆրանսիական բուրժուազիայի առավել հետադիմական մասն ինտերվենցիա յեր պատրաստում ԽՍՀՄ դեմ, դրա համար զինվորականության առավել հետադիմական շրջաններին զորահավաքելով:

Ռամզինը և Լարիչևը գնացել եյին Լոնդոն և այնտեղ բազմաթիվ անգամ տեսակցություն եյին ունեցել գնդապետ Լոուրենսի, այդ հռչակավոր լրտեսի, հետախույզի և ինտերվենցիա կազմակերպողի հետ: Այս Լոուրենսի հետ Ռամզինն ու Լարիչևն անմիջական կապ ունեյին: Բացի այդ, նրանք կապված եյին տարբերկրյա մի քանի գեներալների հետ, վորոնք 1918–1920 թ. թ. մասնակցել եյին ՌՍՖԽՀ դեմ զինված ինտերվենցիային Արխանգելսկում: Արդյու-

նաբերական կուսակցության, ինչպես և շախտիի գործի մասնակիցներն իրենց հիմնական ուշադրությունն ուղղել էին զինված ինտերվենցիա կազմակերպելու վրա։ Նրանք ինտերվենցիայի պլանը կապել էին վնասարարական, դիվերսիոն, լրտեսական աշխատանքի կազմակերպման հետ, որը պետք է պայթեցներ մեր թիկունքը և ապահովեր հակահեղափոխության հաջողությունը։

Բոլորը կհիշեն Մոսկվայում, Որեխովո-Զույեվում, Իվանովոյում էլեկտրակայանների վնասարարական գործը, որ հայտնի է «Մետրո վիկերս» անունով։ Արտաքուստ կթվար, թե ամբողջ գործը բացառապես վնասարարական գործողությունների կազմակերպումն էր Մոսկվայի և այլ քաղաքների էլեկտրակայաններում։ Այնինչ երբ այստեղ մերկացվեցին անգլիական հետախուզական մարմինների, Ինտելինջենս-սերվիսի բանսարկությունները, որը մեզ մոտ շպրտեց իր հետախույզներին հանձին «ինժեներներ» Տորոնտոնի, Մակդոնալդի, Մոնհաուզի և ուրիշների։

ԽՍՀՄ անգլիական հետախուզության սպաներ ուղարկելու փաստն ինքնին վկա-



յում է, թե ինչ իսկական նպատակ ուներ այս «ձեռնարկումը», որը թաքնվում էր տնտեսական և առևտրական նպատակների և նույնիսկ «տեխնիկական օգնություն» ցույց տալու պարտավորությունների տակ։

Այդպիսով, կարելի է պնդել, որ զանազան վնասարարական, դիվերսիոն և դրա նման հակախորհրդային խմբերի գործունեությունը մեր երկրում օրգանապես կապված է օտարերկրյա հետախուզությունների հետ, որոնց գործակալությունն էլ հենց ըստ էության հանդիսանում են այս հակահեղափոխական խմբերը։

Զարմանալի չէ, որ նույն այդ կապը գոյություն ուներ և ունի նաև մեր դեմ ուղղված բոլոր հետագա դավադրությունների մեջ և որ օտարերկրյա հետախուզությունների գործակալություն դարձան հենց տրոցկիստները, զինովյեվականները, աջերը, բոլոր այն խմբերը, որոնք առաջ բանվոր դասակարգի ներսի քաղաքական հոսանք էին, իսկ հետո վնասարարների, լրտեսների, դիվերսանտների, տեռորիստների մի բանդա դարձան։

Տրոցկիստական-զինովյեվական միացյալ կենտրոնի, տրոցկիստական հակախորհրդա-

յին կենտրոնի գործը և Տուխաչևսկու,
Յակիրի, Ուբորևիչի զինվորական-ֆա-
շիստական դավադրության վերջերս տեղի
ունեցած դատավարությունը և այլն նորից
ընդգծում են, որ դավադիրներն օրգանա-
կան կապ ունեն օտարերկրյա ֆաշիստական
կենտրոնների, նրանց գլխավոր շտաբների,
նրանց հետախուզական մարմինների և ոս-
տիկանական պահնորդական բաժինների
հետ:

***

Օտարերկյա հետախուզությունների պը-
րակտիկան և տեխնիկան ուսումնասիրելիս
ուշադրություն է գրավում ոչ միայն այն,
թե ինչպես են կազմում իրենց կադրերն
այս հետախուզությունները, այլև այն,
թե ինչպես են նրանք ընդհանրապես դնում
կադրերի հարցը: Այստեղ պետք է ասել,
որ մեր կարևորագույն խնդիրներից մեկն
այդ կադրերի մերկացումն է, ինչպես,
ընդհակառակը, հետախուզական մարմին-
ների ամենապատասխանատու խնդիրն է
իրենց կադրերը մերկացումից, բացահայ-
տումից պաշտպանելն է:

Երբ ծանոթանում ես այս կարգի տար-
բեր գործերի հետաքննական նյութերի



հետ, ակամայից ուշադրություն է գրա-
վում այն պայքարը, որ տեղի չի ունե-
նում բանված ու մերկացված հետախույզ-
ների և մեր հետաքննական մարմինների
միջև, որոնք ջանք են թափում դուրս քա-
շել, մինչև վերջը մերկացնել թշնամի
կադրերին: Այս պայքարում խորհրդային
հետախուզության ուժն ու հզորությունը
միշտ հաղթում է: Սակայն ինքը պայքարը
ցույց է տալիս, որ օտարերկրյա հետա-
խուզության անգամ այն գործակալները,
որոնք ցույց են տալիս, թե իրենք զինա-
թափվում և զղջում են, այն ինչ իրակա-
նության մեջ մեծ մասամբ այն բոլորի
համար են զղջում ու զինաթափվում, ինչ
արդեն առանց նրանց էլ հայտնի չէ խոր-
հրդային իշխանության մարմիններին և ինչ
չի կարելի արդեն թաքցնել: Եվ ընդհա-
կառակը, այն մասին, ինչ մեզ քիչ է հայտ-
նի կամ բոլորովին հայտնի չէ, նրանք հա-
մառ կերպով աշխատում են լռել և ըստ
կարելույն ծածկել:

Հակախորհրդային տրոցկիստական կենտ-
րոնի դատավարության ժամանակ յուրա-
քանչյուր մեղադրյալ ասում էր, թե ինքը
զղջում է և ասում է ճշմարտությունը և

յին կենտրոնի գործը և Տուխաչևսկու, Յակիրի, Ուբորևիչի զինվորական– ֆաշիստական դավադրության վերջերս տեղի ունեցած դատավարությունը և այլն նորից ընդգծում են, վոր դավադիրներն օրգանական կապ ունեն օտարերկրյա ֆաշիստական կենտրոնների, նրանց գլխավոր շտաբների, նրանց հետախուզական մարմինների և վոստիկանական պահնորդական բաժինների հետ:



Օտարերկյա հետախուզությունների պը–րակտիկան և տեխնիկան ուսումնասիրելիս ուշադրություն է գրավում վոչ միայն այն, թե ինչպես են կազմում իրենց կադրերն այս հետախուզությունները, այլև այն, թե ինչպես են նրանք ընդհանրապես դնում կադրերի հարցը: Այստեղ պետք է ասել, վոր մեր կարևորագույն խնդիրներից մեկն այդ կադրերի մերկացումն է, ինչպես, ընդհակառակը, հետախուզական մարմինների ամենապատասխանատու խնդիրն է իրենց կադրերը մերկացումից, բացահայտումից պաշտպանելն է:

Յերբ ծանոթանում ես այս կարգի տարբեր գործերի հետաքննական նյութերի



հետ, ակամայից ուշադրություն է գրավում այն պայքարը, վոր տեղի յե ունենում բռնված ու մերկացված հետախույզների և մեր հետաքննական մարմինների միջև, վորոնք ջանք են թափում դուրս քաշել, մինչև վերջը մերկացնել թշնամի կադրերին: Այս պայքարում խորհրդային հետախուզության ուժն ու հզորությունը միշտ հաղթում է: Սակայն ինքը պայքարը ցույց է տալիս, վոր օտարերկրյա հետախուզության անգամ այն գործակալները, վորոնք ցույց են տալիս, թե իրենք զինաթափվում և զղջում են, այն ինչ իրականության մեջ մեծ մասամբ այն բոլորի համար են զղջում ու զինաթափվում, ինչ արդեն առանց նրանց էլ հայտնի յե խորհրդային իշխանության մարմիններին և ինչ չի կարելի արդեն թաքցնել: Յեվ ընդհակառակը, այն մասին, ինչ մեզ քիչ է հայտնի կամ բոլորովին հայտնի չե, նրանք համառ կերպով աշխատում են լռել և ըստ կարելույն ծածկել:

Հակախորհրդային տրոցկիստական կենտրոնի դատավարության ժամանակ յուրաքանչյուր մեղադրյալ ասում էր, թե ինքը զղջում է և ասում է ճշմարտությունը և

միայն ճշմարտությունը: Իսկ իրականում այդ դավաճանների ցուցմունքների մեջ ճշմարտության կեսն ել չկար: Չե՞ որ յուրաքանչյուր հետևյալ դատավարությունն անհերքելիորեն յերևան է հանում բազմաթիվ նոր փաստեր, որ վարպետորեն սքողել և թաքցրել է մեր ուշադրությունից այն խումբը, որ առաջ նստած եր մեղադրյալների նստարանի վրա:

Զինովյեվականներն իրենց ցուցմունքներում շատ բան չասացին և շատերին չմատնեցին: Դա կարելի յեր կռահել հետաքննության սկզբից հենց, և դա ամբողջովին հաստատվեց դատի ժամանակ և դատից հետո, յերբ սկսեց բացվել նոր փաստերի մի ամբողջ շարք, որ թաքցրել եյին այդ «զղջացող» հանցագործները հետաքննությունից ու դատարանից:

Պետք է ուղղակի ասել, որ այդ պարոնները մինչև իրենց շնչային կյանքի վերջին րոպեն միշտ և շարունակ ջանք եյին թափում առավելագույն չափով յերևան չբերել, թաքցնել իրենց մարդկանց, իրենց համախոհներին, իրենց գործակիցներին:

Կադրեր հավաքագրելիս ոտարերկրյա հետախուզությունն ու նրա տրոցկիստական



ու այդ գործակալությունը չեր խորշում շարքային աշխատողներից: Իրենց հանցագործ, սառը գործունեության մեջ նրանք աշխատում են ներգրավել «փոքր» մարդկանց, չխորշելով վոչ վոքից: Յեթե նրանց ճանկն ընկնի յերիտասարդ կոմյերիտական, մշակում են նրան, յեթե նրանց ճանկն ընկնի հանգստի որերին խմել սիրող մարդ, նա յել պետք կգա նրանց, յեթե նրանց ճանկն ընկնի ջահելների խումբ, որ պարերի յե պատրաստվում գնալ, նրանք չեն զլանում այս մարդկանցից յել միքանիսին իրենց կողմը քաշել և ոգտագործել նրանց իրենց զազիր, հանցավոր նպատակների համար: Այսպես է գործում ոտարերկրյա հետախուզությունը:

Պետք է ուղղակի ասել, որ հետախուզությունների հավաքագրող-գործակալները վոչ մի բանից չեն խորշում: Դրա համար ել վոչ վոք չպետք է այնպես մտածի, թե ինքը, իբր, փոքր մարդ է և հետախուզության համար վոչ մի արժեք չի ներկայացնում: Ճիշտ չի հետևյալ կերպ մտածելը. յես փոքր մարդ եմ, աշխատում եմ գործարանում, վորևե հիմնարկության մեջ վորպես մեքենագրուհի, արտագրող, գոր-

ծավալը, ի՞նչ հետաքրքրություն կարող եմ
յես ունենալ տարբերկրյա հետախուզու-
թյան համար: Այսպես դատել չի կարելի:
Պետք է հիշել, որ հետախուզությունը
մարդկանց լայն ցանցով է որսում, ընկա-
վարվելով հետևյալ սկզբունքով՝ ձեռք
գցիր այն բոլորին, ով ճանկդ կընկնի, մի
խորշիր ոչ ոքից, ամեն մեկն էլ պետք
կգա: Բնական է, տարբերկրյա հետախու-
զությունը հատկապես հետաքրքրվում է
այն մարդկանցով, որոնք անմիջականո-
րեն կամ մյուս մարդկանց միջոցով որևէ
առնչություն ունեն պետական որևէ պա-
տասխանատու աշխատանքի հետ: Նրանք
խիստ մեծ հետաքրքրություն են ցուցաբե-
րում օրինակ համարակալված գործարան-
ների նկատմամբ: Այստեղ նրանք, այդ
պարոնները, ոչ մի միջոց չեն խնայում
թափանցել փորձելու այն ճեղքի մեջ, որ
բացվում է զանազան պատահական հանգա-
մանքների շնորհիվ:

Թե ինչպես է կատարվում հավաքագրու-
մը, դրա խիստ ցայտուն օրինակը տվեց
հակախորհրդային տրոցկիստական կենտ-
րոնի դատավարությունը և, մասնավորա-
պես, մեղադրյալ Ստրոյիլովի ցուցմունք-



ները: Հետախուզության հետ Ստրոյիլովի
կապն սկսվեց «չեզոք» հողի վրա—տեխնի-
կական հետաքրքրության հողի վրա: Ստրո
յիլովը, արտասահմանյան գործուղման
ժամանակ, ծանոթանալով ինժեներ Ֆոն—
Բերգի հետ, որը նրան ինչ որ տեխնի-
կական օգնություն ցույց տվեց: Ստրոյի-
լովը հետաքրքրվում էր տեխնիկական նո-
րություններով: Բռնելով նրա այդ ջիղը,
Բերգն սկսեց նրան շրջապատել իր սիրալի-
րություններով: Նա նրան ծանոթացրեց մի
ավելի որակյալ հետախույզի, վոմն
Վյուստերի հետ: Այս Վյուստերն առաջար-
կեց Ստրոյիլովին, թե ինքը կարող է հա-
ջողեցնել, որ Ստրոյիլովը գնա Ֆրանսիա
ու Չեխոսլովակիա նորագույն տեխնիկայի
հետ ծանոթանալու համար: Նա խոստա-
ցավ դա հաջողեցնել, բայց հայտնեց, թե
քանի որ Ստրոյիլովը գերմանացի չէ, ա-
պա պետք է որևէ փաստաթուղթ լինի, ո-
րը հավաստիացնի, որ Ստրոյիլովը չի խա
փի: Ստրոյիլովը տվեց մի այդպիսի փաստա
թուղթ, որով ցանկություն էր հայտնում
մնալ Գերմանիայում և չվերադառնալ ԽՍ-
ՀՄ: Ստոր ու նշավակիչ փաստաթուղթ
խորհրդային մարդու համար: Եվ ինչ տե-

ղի ունեցավ հետագայում: Իսկ հետո ահա թե ինչ տեղի ունեցավ:

Ստանալով այս փաստաթուղթը, Վյուստերը մերժում է Ստրոյիլովին Ֆրանսիա և Չեխոսլովակիա մեկնել թույլատրելը և առաջարկում է մեկնել...ԽՍՀՄ: Ստրոյիլովը շշմում, ապշում, փորձում է պայքարել, բայց, ավաղ, իզուր: Վյուստերի ձեռքումն է Ստրոյիլովի ստորագրությունը կրող փաստաթուղթը: Ստրոյիլովը յերկընտրանքի առաջ է՝ կամ պետք է մերկացնի իր հանցավոր սխալը խորհրդային իշխանության առաջ, կամ յենթարկվի Վյուստերի պահանջներին: Ստրոյիլովը փոքրոգություն է անում և վերջնականապես ընկնում է Վյուստերի ճանկը, գերմանական հետախուզության ճանկը: Յեթե նա ազնըվություն, իսկական խորհրդային հայրենասիրություն ունենար, ապա նա ինքը կներկայանար խորհրդային լիազոր ներկայացուցչություն և կմերկացներ և՛ իրեն և՛ լրտեսներին, և դրանով հենց կպրծներ օտարերկրյա հետախուզության ճանկերից:

Դա անելու փոխարեն նա ընդունեց Վյուստերի պայմանները և գնաց ԽՍՀՄ, իսկ նրա հետևից յեկավ յերրորդ հետա-



խույզը, վորն սկսեց նրան մշակել այնպես, ինչ ձեռնտու յեր այդ հետախուզությանը:

Ահա ինչ մեթոդներով են գործում հետախույզները: Այս մեթոդները յերևան յեկան նաև վերջին դատավարության ժամանակ:

Այս դատավարությունը ցույց տվեց, վոր հանցավորները գործել են բացառիկ լկտիությամբ և խարդախությամբ: Դժվար է իրեն զսպել և չվրդովվել նրանց հանցավոր գործունեյության այն փաստերի հանդեպ, վորը հաստատվեց դատարանում: Բայց իրենք հանցագործները լրիվ չափով զսպում եյին իրենց: Դա վկայում է դիմակավորման այն արվեստի մասին, վորի առաջ գունատվում են Ռադեկի, Կամենևի, Պյատակովի, Զինովևի և այլ անզգամների նենգությունն ու ստորությունը:

Ի՞նչի մասին է խոսում այս: Այս խոսում է նաև այն մասին, վոր օտարերկրյա հետախուզությունը, վորն իր համար գործակալություն է ընտրում, մեծ վարպետությամբ է գործում: Դա շատ բան է պարտավորեցնում նաև մեզ: Դա պարտավորեցնում է, վոր մենք խիստ աչալուրջ լինենք, դա մեզ առաջադրում է օտարերկրյա հետախույզներին մերկացնելու արվես-

ուն տիրապետելու խնդիրը, հետախույզներ, վորոնք գործում են զգույշ, կամաց-կամաց, գողտուկ: Պետք է հիշել, վոր օտարերկրյա հետախույզները մեծ մասամբ իրենց ուժերը խնայում են ծայրահեղ դեպքի, պատերազմի համար: Օտարերկրյա հետախույզները գիտեն, թե նրանց համար ինչ նշանակություն ունի իրենց ռեզիդենտների տապալումը, նրանց ծրագրերի և նախապատրաստական ձեռնարկումների տապալումը: Դրա համար էլ նրանք խիստ հաշիվ տեսնելով են գործում: Մեծ մոլեգին խաղ է խաղացվում, ամեն ինչ վա-բանկ է դրվում: Այստեղ հաճախ գործում է հետևյալ կանոնը՝—կամ-կամ, կամ հաջողություն կամ կործանում: Ահա ինչու օտարերկրյա հետախույզներն իրենց համար մարդիկ խիստ շրջահայաց և զգույշ են հավաքագրում, մանրազնին ուսումնասիրում են այդ մարդկանց, ուսումնասիրում են նրանց թույլ կողմերը:

Հետախուզությունը մեծ արվեստ է յերևան բերում իր յուրաքանչյուր «զոհի» մեջ լարեր գտնելու հմտության մեջ, վորոնց կարողանում է նա դիպչել: Այս գործին չի կարելի մերձենալ այնպես, թե դա



դատարկ, վոչ լուրջ գործ է: Դա լուրջ գործ է և պետք է կարենալ այս գործին լուրջ մոտեցում ունենալ:

Թույլ տվեք բերել գործին վոչ լուրջ վերաբերմունքի մի օրինակ, վորը վատ հետևանքներ ունեցավ:

1937 թվի հունվարի 30-ին, առավոտյան ժամը 4-ին վոմն խորհրդային քաղաքացի Կ-ն յերեկույթից տուն էր վերադառնում: Ճանապարհին Կ-ն ճաշարան մտավ: Սեղաններից մեկի առաջ նա նկատեց մի օտարերկրացու և կասկածեց նրան հետախույզ լինելու մեջ: Քաղաքացի Կ-ն լավ հայրենասեր է: Նա վճռեց դիմակազերծ անել օտարերկրյա հետախույզին: Այս բարի նպատակով նա օտարերկրացու հետ ծանոթություն է հաստատում և ի վերջո օտարերկրացու բնակարանն է գնում: Վոչ մի բան չկարողանալով իմանալ այդ օտարերկրացուց, քաղաքացի Կ-ն, սակայն ինքը դուրս տվեց մի շարք ազգանուններ և անուններ, հաղորդեց իր ծանոթների կյանքի և աշխատանքի մի քանի մանրամասնություններ: Օտարերկրացին, վոր պարզվեց, թե իսկապես մեկ օտարերկրյա հետախուզության գործակալ է, քաղ. Կ-ին բավական

հաջող ողջադրծեց։ Քաղ. Կ-ն ոչ միայն խաբվեց, այլև այդ հետախույզի ուղղակի գործակիցը դարձավ։ Քաղ. Կ-ն ցանկանում էր ծառայություն մատուցել մեզ, իսկ իրոք մեզ վնաս պատճառեց։ Ճիշտ որ՝ հաճոյակատար հիմարը թշնամուց վտանգավոր է...

Ահա ինչպես յերբեմն «բարի ցանկությունը» պարզամիտների և չաղակրատների դեմ է ուղղվում...

Մոսկվայում ոտարերկրյա մեկ հետախույզ շատ հաճախ եր ճմեռն ըրոսնում Կուլտուրայի և Հանգստի պարկի զանազան հարթակներում, զանազան թատրոններում և այլն։ 1935 թվին Կուլտուրայի և Հանգստի կենտրոնական պարկում դիմակների Թատրոնի մոտ այս հետախույզը խոսակցության բռնվեց խորհրդային մեկ քաղաքացու, գիտական աշխատողի վորդու, 20 տարեկան մի կոմյերիտականի հետ։ Ծանոթանալուց հետո այս հետախույզն առաջարկեց կոմյերիտականին իր հետ գնալ Մեծ Թատրոն։ Կոմյերիտականը համաձայնվեց։ Գնացին Թատրոն։ Ապա հետախույզն առաջարկեց կոմյերիտականին միասին ոպերա գնալ։ Համաձայնվեց։ Գնացին



ոպերա, ծխծաղեցին, ուրախ ժամանակ անցկացրին։ Այնուհետև հետախույզը սկսեց հետաքրքրվել կոմյերիտականի անձնական կյանքով, ով վորտեղ է աշխատում, սկսեց հետաքրքրվել, թե նա վոչ մի բանի կարիք չունի՞։ Նա սկսեց պատմել իր մասին, իր լավ ապրելու մասին, իր լավ ծառայության մասին։ Նա աջ ու ձախ սոեր դուրս տվեց, բացահայտ հույս տածելով, վոր նրա նոր ծանոթը միամիտ դուրս կըգա։ Ձևական հետախույզի խնդրով այս յերիտասարդը, կոմյերիտականը, ծանոթացընում է նրան իր մի շարք ընկերների հետ։ Այս ընկերների մեջ գտնվեց այնպիսին, վորն աշխատում եր պաշտպանության ձեռնարկություններից մեկում։ Հենց դա յեր հարկավոր եր հետախույզին... Այսպիսով այդ հետախույզը շատ լայն ծավալեց իր ծանոթների շրջանը։ Նրա վարմունքների մեջ կասկածելի վոչինչ չկար, վոչ մի անտակտ ու անհամեստ հարց նա չեր տալիս, առավել ևս նա վոչ մի առաջարկ չեր անում լրտեսական ու տեղեկատուական գործունեյության մասին։

Սակայն դա այսպես եր ծանոթության սկզբին, իսկ հետո... Նրա ծանոթներից

մի քանիսը, նույնպես յերիտասարդները, դուրս յեկավ, վոր կապված են այս հետախույզի հետ արդեն իսկ ուղղակի լրտեսական գործունեյության գծով: Իհարկե, նրանք բոլորն էլ հայտաբերվեցին, հայտաբերվեց նաև ինքը հետախույզը, բոլորն էլ իրենց արժանի պատիժն ստացան: Բայց մենք յերաշխիք չունենք, թե արդյո՞ք հետախույզին չի հաջողվի այնպիսի բաներ իմանալ, վոր նա և նրա նման պարոնները չպիտի իմանան:

Պատահեց, վոր մեկ վոչ յերիտասարդ, բայց և վոչ էլ շատ հասակավոր ինժեներ, վոր աշխատում եր Մոսկվայի գործարաններից մեկում, արձակուրդ գնաց Գագրի: Արձակուրդում իհարկե մարդն արձակուրդային տրամադրություն է ունենում: Բայց մեր ինժեները գործնական մարդ եր և դրա համար էլ նա իր հետ է վերցնում ինչ վոր նյութեր, մտածելով թե կաշխատի և հաճելին ոգտակարի հետ կմիացնի: Նա յեկավ Գագրի և այստեղ ծանոթացավ մի, ըստ ամենայնի հաճելի տիկնոջ հետ: Այս տիկինը հատուկ ուշադրություն եր նվիրում նրան, ծանոթացնում եր այլ, նույնպես ըստ ամենայնի հաճելի



տիկինների հետ: Այսպիսով մի շատ հաճելի շրջան ստացվեց և ամեն բան լավ եր ընթանում: Հանկարծ լույս աշխարհ է ընկնում տիկնոջ ամուսինը: Փոքրիկ շըփոթություն, բայց դա շուտով անցնում է, և գործը կարգի յե ընկնում: Ինժեները ծանոթանում է տիկնոջ ամուսնու հետ, և բարեկամությունը շարունակվում է: Յերբ տիկինը և նրա ամուսինը իմացան, վոր ինժեները զբաղվում է իր հետ բերած նյութերի մշակմամբ, նրանք շտապում են առաջարկել նրան իրենց համեստ ոգնությունը, զուտ բարեկամական մի ոգնություն:— Նա կուրորտ գալիս, գիտեք, պատահաբար իր հետ գրամեքենա յե վերցրել, դրա համար էլ կարող է նրա աշխատանքն արտատպել մեքենայով:

Պայմանավորվեցին, և այս տիկինն սկսեց ինժեների թելադրությամբ շատ հետաքրքիր նյութ մեքենագրել: Իսկ վերջը, ոգտվելով ինժեների բերանբացությունից, տիկինը մի անգամ այդ նյութերը թողեց իր մոտ, և յերբ ինժեները հետևյալ որը յեկավ նրա մոտ հերթական արտատպության համար, տիկինն այլևս չկար, չկար նաև մյուս տիկինը, չկար և նրա ամուսի-

նը... բոլորն անհետացել էյին: Իսկ վերջում պարզվեց, վոր այս յերկու տիկինները և ամուսինը մեկ հետախուզության գործակալներ էյին և ինժեներից գողացել եյին հետախուզությանն անհրաժեշտ նյութը:

Ահա կուրորտներում յերբեմն ինչպիսի «հաճելի» ծանոթություններ են լինում...

Մի այլ դեպք: Լենինգրադում ապրում է մի ընտանիք, պայմանական կերպով դըրան տանք Սիտոևների ազգանունը:

Ինքը Սիտոևը չինացի յե, իսկ կինը՝ ռուս:

Սիտոևները 16 տարեկան աղջիկ ունեյին: Այդ աղջկան մարդու յեն տալիս: Նա ամուսնանում է № հրաձիգ դիվիզիայի, № մարտկոցի հրամանատարի հետ:

Հայրն ու մայրը շատ սիրեցին հրամանատարին, իրենց նոր ազգականին, փեսային, չարունակ հյուր էյին կանչում նրան, մի խոսքով միմյանց հետ յեղ ու մեղր եյին: Այդ հրամանատարի միջոցով Սիտոևները ծանոթություն հաստատեցին նաև այլ զինվորականների հետ: Ընդհանրապես Սիտոևների բնակարանը հետաքրքիր բնակարան է: Այստեղ բոլորին շատ լավ են հյու-



բասխրում: Սեղանը չարունակ բաց է, պատեֆոնը յերգում է, տան տերերը սիրալիր են և այլն: Այստեղ սիրով գալիս էյին նաև այլ Սիտոևների փեսային ծանոթ հրամանատարները: Թեյ խմելիս, յերբեմն կոնծելիս, այստեղ անբռնազբոսիկ կերպով զանազան զրույցներ էյին անում, յերբեմն նաև խոսում էյին Կարմիր Բանակի, ավյալ զորամասի կազմի, սպառազինման, մատակարարման և այլն և այլնի մասին:

Իսկ մի առ ժամանակ անց պարզվեց, վոր Սիտոևն, այդ չինացին, հրամանատարի «աները» լինելուց զատ, միաժամանակ, համատեղությամբ նաև լրտես է, մեկ ոտարերկրյա հետախուզության գործակալ:

Նման շատ փաստեր կարելի յե բերել:

Կարելի յե հետևություն անել, վոր ոտարերկրյա հետախուզությունը մարդիկ է հավաքագրում վոչ թե ինչ վոր հատուկ յեղանակով, իրենք հետախույզներն էլ բոլորովին ինչ-վոր առանձնահատուկ մարդիկ չեն:

Դուք հիշում եք, ինչպես ընկեր Ստալինը, խոսելով առաջին հնգամյակի արդյունքների մասին, մատնանշեց, թե վորոշ ընկերներ բոլորովին անճիշտ պատկե-

յացում ունեն կուլակի մասին: Նրանք կուլակին պատկերացնում են վորպես ինչ վոր առանձին արտաքին ունեցող մարդ, գզվելի, արնակալած յերեսով և այլն: Ընկեր Ստալինը նախազգուշացրեց կուլակի մասին այնպիսի անճիշտ պատկերացում ունենալու առթիվ, հիշեցնելով, վոր կուլակը հաճախ բոլորովին հանդարտաբարո, համարյա սուրբ է ձևանում:

Դա պետք է ասել նաև հետախույզների մասին: Չի կարելի հետախույզներին վորպես ինչ վոր առանձնահատուկ մարդիկ պատկերացնել, վորոնք աչքի յեն ընկնում ինչ վոր արտաքին առանձին հատկություններով, կամ հատկանիշներով: Չի կարելի մտածել նաև, թե նրանք հավաքագրում են ինչ վոր առանձնահատուկ, արտասովոր յեղանակներով: Վոչ, հավաքագրումը նրանք կատարում են սովորաբար ամենահասարակ յեղանակով, սովորական քաղքենիական պայմաններում: Բայց նրանց մեթոդի առանձնահատկությունն այն է, վոր նրանք օգտագործում են մարդկանց թույլ տեղերը: Մեկը հետաքրքրվում է տեխնիկայով, ինչպես Ստրոյիլովը, և թակարդն է ընկնում այս գործով, մյուսը հետաքրքրվում է յերաժշտությամբ, յերրորդը հետաքր-



քրվում է ֆլիրտով—դա հավաքագրման խիստ տարածված հող է ներկայացնում—և թակարդ է ընկնում այդ գործով, և հետախույզների ճանկը պինդ կպչում ու պոկ չի գալիս նրանցից:

Հետախույզների շրջանում լայն տարածված է հետևյալ յեղանակը.—հյուր են հրավիրում, ծանոթացնում են մի «հետաքրքիր կնոջ» հետ, ինտիմ ծանոթություն է սկսվում, իսկ դրա հետ միասին սկսվում է «կանանց հարցով» թակարդ ընկած վորսի շանտաժը: Վորսվածը վախենում է գործի հրապարակումից, ընտանեկան տեսարաններից—ընտանեկան դրամայից: Վորսվածի ինտիմ կապերի մերկացման սպառնալիքի տակ, տարբերկրյա հետախուզությունների գործակալները կորզում են նրանից հարկավոր տեղեկությունները և ներս են քաշում նրան լրտեսական աշխատանքի մեջ: Ցեվ դուրս է գալիս, թեև յեղունգն է վորոգայթ ընկել, բայց թե պրծնում չկա:

Սովորաբար տարբերկրյա հետախույզները հասարակ միջոցներով, հասարակ մեթոդներով, հասարակ յեղանակներով են գործում: Նրանք հետ ու առաջ են ռուբում

տրամվայներով, թատրոններում, կինոներում, գարեջրատներում, ծանոթանում են և՛ գզաստների, և՛ հարբածների հետ, և՛ լուրջ, և՛ վոչ լուրջ մարդկանց հետ: Լուրջների հետ ծանոթություն են հաստատում ավելի լուրջ կերպով, իսկ վոչ-լուրջների հետ—վոչ լուրջ կերպով: Նրանք շատ ճկուն մեթոդներ են կիրառում, վորոնք բոլորն ուղղված են մեկ նպատակի:

Դժվար չի մերկացնել ոտարերկրյա հետախուզությունների այս մեթոդները և հանցագործ մեքենայությունները, յեթե մարդ իր ժամանակին և ինչպես հարկն է ճանաչի իր ծանոթներին, կարողանա ճիշտ գնահատել այն մարդկանց, վորոնց հետ պատահում և բարեկամանում է: Տարաբախտաբար, մեզնում մարդիկ այս բանից գլուխ չեն հանում, այնպես վոր մեկ—մեկ ուղղակի ապշում ես...

Վերջերս յես պարզեցի մեկ գործ: Մի հին կուսակցական ընկեր, վորն իր ստաժը հաշվում է անդամ 1905 կամ 1904 թվից, ծանոթ է իմիջի այլոց մի նկարչի հետ, վորին իր բարեկամն է համարում: Բայց յերբ դեպքը յեկավ և այդ կոմունիստին սկսեցին բացատրել, թե ով է նրա այդ լավ ծանոթը, նրա



նախահեղափոխական, 1907 թ. ստաժ ունեցող բարեկամը, յերբ սկսեցին մանրամասն լուսաբանել գործը, այն ժամանակ պարզվեց, վոր մեր կոմունիստն իր «բարեկամին» շատ վատ է ճանաչում, թեև «բարեկամին» ոգնել էր արտասահմանյան գործուղում ստանալու գործում:

Հաճախ պատահում է, վոր ոտարերկրյա հետախույզն մի շարք տարիներ ապրում է ձեզ հետ կողք-կողքի, հանդարտ ու խաղաղ: Վոչ մի դիվերսիա չի կազմակերպում, վոչ մի վնասարարություն չի կատարում, ապրում է այնպես, ինչպես բոլորը: Իսկ իրոք նա ռեզիդենտ է, նա լրտես և հետախույզ է, վոր հատուկ առաջադրանքներ է ստացել և իրագործում է այդ առաջադրանքները: Նա դիտում է, թե ինչ է կատարվում իր շուրջը, վորտեղ հարկն է տեղեկություններ է ուղարկում, իսկ յերբեմն էլ դա յել նրանից չեն պահանջում, և դրանով էլ սահմանափակվում է ամբողջ գործը: Նա նստում է 5 տարի, 10 տարի, 15 տարի, 20 տարի, մինչև վոր չի տրվի «գործիր» ազդանշանը: Ահա այդ ժամանակ նա սկսում է գործել, կիրառելով այն բոլոր միջոցները, վորպիսիք

այդ ժամանակամիջոցում կարողացել է ձեռք գցել:

Շատ հաճախ կարծում են, վոր ոտարերկրյա հետախուզության գործակալն անպայման պետք է վորևէ բանով իրեն ցույց տա: Պետք է նկատի ունենալ, վոր հետախույզների տարբեր կատեգորիաներ կան տարբեր առաջադրանքներով: Կան այնպիսիները, վորոնք տվյալ ժամանակում վոչ մի պարտականություն չունեն վորևէ ակտիվություն յերևան բերելու: Նրանք, ընդհակառակը, պետք է իրենց համար «հեղինակություն» նվաճեն այնտեղ, վորտեղ աշխատում են, պետք է միայն ձեռք բերեն հարկ յեղած անձանց վստահությունը:

Կան այնպիսի հետախույզներ, վորոնք չպետք է յերևան բերեն իրենց ակտիվությունը, ճիշտ է, մինչև վորոշ ժամանակ: Նրանց հաճախ հետևյալ խնդիրն է առաջադրվում՝ բարենպաստ պայմաններ նախապատրաստել պատերազմի դեպքում թիկունքից հարվածելու համար, իսկ մինչ այդ նրանք պետք է հանդիստ նստեն, աշխատեն ապացուցել իրենց «լոյալությունը» և «նվիրվածությունը» խորհրդային իշխանությանը:



Պետք չէ հրապուրվել այն բանով, թե այս-ինչը լավ է աշխատում, թե նա բարեխիղճ է ծառայում և դրա համար նա չի կարող թշնամի դուրս գալ, չի կարող ոտարերկրյա հետախուզության գործակալ լինել: Այսպիսի դատողությունները ճիշտ չեն և հաճախ չեն արդարանում: Ի հարկե դժվար է ոտարերկրյա հետախուզությունների լրտեսներին և դիվերսանտներին ճանաչելու վորևէ ունիվերսալ, ընդհանուր միջոց տալ կամ մատնանշել: Այսպիսի ունիվերսալ միջոց չկա և չի յել կարող լինել: Պետք է ուղղակի ամեն վոք կանոն դարձնել. ինչ մարդու հետ էլ լինի պետք է այնպես վարվել, վոր յեթե այդ մարդը թշնամի դուրս գա, նա չկարողանա այդ ծանոթությունից իր համար վորևէ ոգտակար և խորհրդային պետության համար վորևէ վնասակար բան քաղել: Պետք է նկատի ունենալ, վոր շատ հաճախ խոշոր հանցագործությունները սկսվում են դատարկ բաներից, թեթև խոսակցություններից, դատարկ չաղակրատությունից: Ցերբեմն մեկը գնդասեղի գլխի չափ վորևէ նորություն է իմանում և այս գնդասեղի գլխի չափ նորությունը սկսում է տա-

րածել, աղմուկ-աղաղակ է բարձրացնում, աշխատելով բոլորին զարմացնել իր բազմատեղյակությամբ: Նա մի ճանճից ոչ միայն մեկ, այլ մի ամբողջ դյուժին փղեր է շինում և այդ փղերին քամուն զբոսնելու յե տալիս: Իսկ հետախուզությունն այս շատախոսությունից ինչ որ դաս է քաղում:

Եթե օրինակ պաշտպանության որևէ գործարանի աշխատող սկսում է դուրս գալ որևէ նվաճման կամ կատարելագործման մասին, յեթե նա խոսի անգամ որևէ մասնիկի մասին, ապա յերբեմն այս մասնիկն էլ բավական է, որ հետախուզությունը հասկանա, թե ինչումն է բանը:

Անհրաժեշտ է ուղղակի ասել. պետք է պահպանել հետևյալ ոսկե կանոնը— քիչ շաղակրատիր, ավելի մտածիր այն մասին, ինչ խոսում ես, ինչ ասում ես, լեզուդ քեզ քաշիր:

Այն ինչ գիտես, մի տարածիր, ինչ չգիտես, մի հնարիր, որովհետև յուրաքանչյուր մտացածին բանը ռեալ հող ունի, որից ոտարերկրյա հետախուզությունը կարող է, ինչպես ոսկեբեր յերակից, դեն գցելով ավազն ու խարամը, վերցնել այն,



ինչ նրան կարող է ոգտակար ու պիտանի լինել:

***

Վերջին ժամանակաշրջանի վնասարարական աշխատանքն ի հարկե վճռականապես տարբերվում է վնասարարության այն ձևերից, որոնք կիրառվում եյին անցյալում, մի կողմ թողած դեռ շախտիի ժամանակաշրջանը, «Արդյունաբերական կուսակցության» ժամանակաշրջանի վնասարարությունը: Անցյալում վնասարարությունն աչքի յեր ընկնում կոպտությամբ, պրիմիտիվությամբ: Այժմ այս գործը մեր թշնամիներն ավելի նրբությամբ են անում:

Վնասարարների և դիվերսանտների հիմնական խնդիրը յերկաթուղային տրանսպորտում յերկաթուղային խորտակումներ կազմակերպելն է: Բայց իզուր կլինի կարծել, թե այս խորտակումները միայն յերկաթուղային ճանապարհների վրա յեն կազմակերպվում: Դրանք հաճախ կամաց-կամաց են նախապատրաստվում, մի շարք այնպիսի հանցագործ ձեռնարկումների սիստեմի միջոցով, որոնք ուղղված են խորտակումներ կազմակերպելուն: Հաճախ այս խորտակումները նախապատրաստում են ոչ

թե բուն յերկաթուղու վրա, այլ, սովորաբար, օժանդակ ձեռնարկություններում, մասամբ ու առավելապես դեպոյում: Յեթե վորևէ արհեստանոցում կամ դեպոյում տրոցկիստ-վնասարարներին և հակախորհրդային այլ տարրերին հաջողվում է 3–4 հոգուց բաղկացած խումբ կազմակերպել, ապա այստեղ դերը բաշխվում է այնպես, վոր դրանց մի մասը վնասարարություն է անում, իսկ մյուսները խցկվում են կոնտրոլի մեջ և այս կերպ ապահովվում են շոգեշարժերին այնպիսի վիճակում բաց թողնելը, վորից անխուսափելիորեն խորտակում առաջ կգա:

Մեր յերկաթուղիներից մեկում 1936 թվի վերջին յերկու ամիսների ընթացքում մեկ փոքր դեպո նորոգել ու բաց եր թողել 18 շոգեշարժ զգալի խոտանով: Այստեղ սիստեմատիկաբար բաց եյին թողնվում սռնիների վոչ ճիշտ կենտրոնացումով (Центровкой осей) շոգեշարժեր, այսինքն այնպիսի թերություններով, վորոնք ակնհայտ կերպով պետք է ավարիա ու խորտակում առաջ բերեյին: Յեվ այս դեպոյի բաց թողած շոգեշարժերն իսկապես ընկնում եյին խորտակումների ու ավարիաների մեջ:



Սկսեցին քրքրել այս գործը, և դուրս յեկավ, վոր այստեղ ել եր նստել հին տրոցկիստների մի խումբ, վորոնք դիտավորյալ կերպով վնասարարորեն եյին «նորոգում» շոգեշարժերը:

Դեպքերի մի ամբողջ շարքով ապացուցված է, վոր շոգեշարժերին կցում եյին անիվի այնպիսի զույգեր, վորոնց, այսպես կոչված, ռեբորտներն անթույլատրելի հաստություն ունեյին: Ռեբորտը դա բանդաժի դուրս ցցված մասն է, վոր ապահովում է շարժական կազմը ռելսներից դուրս գալուց: Յեղել են դեպքեր, վոր դեպոներից բաց են թողնվել շոգեշարժեր, վորոնց սռնիները բուքսի մեջ վոչ ճիշտ պտույտ են կատարել, այսպես կոչված կուլիսի աննորմալ թափով շոգեշարժեր, այսինքն հիմնական թերություններ եյին թողնում շոգեշարժի շոգեբաշխիչ մեխանիզմի կարևորագույն մասերից մեկում: Այս բոլորը կատարվում է կամաց-կամաց, աննկատելի, այնպես վոր հարկ յեղած դեպքում հնարավոր լինի վնասարարական, դիվերսիոն գործողությունը տեխնիկական անկանոնություններով, պատահականությամբ, անփութությամբ, աչքա-

թողանքով և այլն և այլն սքողել և ի դեպ քրեական պատասխանատվության տակ դցել յերկրորդական մարդկանց, մինչև անգամ անմեղ մարդկանց: Դա յել դիմակավորման ձևերից մեկն է:

Այսպես յեղավ Շումիխա կայարանի խորտակման ժամանակ: Յերկաթուղու ադմինիստրատորներից վոմանց ամեն տեսակի հանցագործ մեքենայությունների հետևանքով,— ադմինիստրատորներ, վորոնք տրոցկիստական դիվերսանտներ դուրս յեկան, հետաքննության ու դատարանին տեխնիկական սուտ ակտեր խցկեցին, ակնհայտ կեղծ բացատրություններ տվին— դատապարտվեցին խորտակմանը մասնակից յերկրորդական մարդիկ, իսկ գլխավորները, խորտակման իսկական մեղավորները ստվերում մնացին: Շումիխա կայարանում խորտակման ժամանակ սպանվեց 29 կարմիր բանակային: Խորտակումը նախապատրաստել եր Կնյազևը, Հարավուրալյան յերկաթուղիների պետը: Իսկ դատի ժամանակ ամբողջ գործը բարդեցին տեխնիկական թերությունների, սլաքավարների վրա, վորոնք անմեղ եյին դիվերսիայի գործում: Հետո սակայն ճշմարտությունը հաղթանա-



կեց: Կնյազևը և նրա հանցակիցները մերկացվեցին, բայց թե այս բանդիտների դիմակավորումը սկզբում հաջողություն եր ունեցել:

Մի քանի որ առաջ մենք ավարտեցինք Կազանի յերկաթուղիների 11-րդ Կրասնոուֆիմսկու դիստանցիայի մի խումբ աշխատողների գործը: Պարզվեց, վոր այնտեղ նստած եր տրոցկիստական-լրտեսական վնասարարների մի խումբ՝ ուղու 11-րդ դիստանցիայի պետ Պորոշինի և կուսկազմակերպիչ խցկված Բերեսնևի գլխավորությամբ:

1936 թվի ընթացքում այստեղ սիստեմատիկաբար վնասարարական աշխատանք եր տարվում, վորի նպատակը յերկաթուղային անտեսության քայքայումն եր: Պարզվեց, վոր այս վնասարարական աշխատանքի հետևանքով 11-րդ դիստանցիայի համարյա բոլոր մասերում ճանապարհների վիճակը խորտակում եր սպառնում անցնող գնացքներին: Կային շպալների թեքումներ, վոր առանձին դեպքերում հասնում եյին 30 սանտիմետրի: Միջակ նորոգումից հետո քիտերը չեյին մաքրվում, թերություն ունեցող ռելսները չեյին փոխվում, բոլտե-

րը չէյին պնդացվում: Ուղին նորոգելիս շպալների տակը ոչ թե բալաստ, այլ ուղղակի տախտակ ու ցից էյին լցնում, ռելսերի կոտրում էր առաջ բերում:

Միայն 11-րդ դիստանցիայի ուղու վիճակը ստուգելիս առ 1-ն ապրիլի 1937 թ. յերեվան բերվեց 2175 թերություն ունեցող ռելս, 62 հազար վոչ պիտանի շպալ, 12 հազար այնպիսի ռելսակապեր, վորոնց անմիջապես փոխելու կարիք է զգացվում: Դրա հետեվանքը մի շարք խորտակումներն էյին:

1937 թվի մարտի 20-ին խորտակում տեղի ունեցավ, ջարդվեց 20 վագոն և վնասվեց 10 վագոն:

1937 թվի մարտի 28-ին մի այլ կայարանամիջում մարդատար գնացքի խորտակում տեղի ունեցավ բարեբախտաբար առանց մարդկային զոհերի:

1937 թվի ապրիլի 5-ին ևս մեկ գնացք խորտակվեց, ջարդվեց 25 վագոն և այլն և այլն:

Սկզբում դա բացատրվում էր առանձին աշխատողների անկարգապահությամբ, անփութությամբ, թափթփվածությամբ, իսկ յերբ խորը քրքրեցին, պարզվեց, վոր



այստեղ բուն էր դրել տրոցկիստական մի բանդա դիստանցիայի պետի գլխավորությամբ և կուսկազմակերպչի մասնակցությամբ: Այս խմբի մեջ էյին մտնում գծի ավագ վարպետը, գծի վարպետը, բրիգադիրները և այլն:

Ջրային տրանսպորտումն էլ տեղ-տեղ տրոցկիստական դիվերսանտները և վնասարարներն աշխատանք են տանում: Որինակ քիչ հանցագործություններ չեն արել նրանք Կասպից ջրային տնտեսության մեջ: Վերջերս թերթերում հաղորդվեց, թե խորտակվեց «Խորհրդային Հայաստան» շոգենավը:

Դա չլսված պարագաներում տեղի ունեցավ:

Շոգենավը մեկնեց նավթի բեռով, 30 հոգի կոմանդայով: Շարժվելիս ջուրն սկսվեց լցվել առաջ տրյումը և ապա մեքենաների մասը, և յերկու ժամվա ընթացքում տանկերը սուզվեց: Կոմանդային հաջողվեց ազատվել, բայց տանկերը և թանկարժեք բեռը ջրի տակ գնացին: Հետաքննությամբ հաստատվեց, վոր «Խորհրդային Հայաստանին» արգելված էր ծով դուրս գալ առանց նախապես նորոգվելու,

վորովհետև տանկերի կորպուսի վիճակն սպառնալից եր: Կար ռեգիստրի ուղղակի արգելումը: Բայց և այնպես չոգենավային վարչության ղեկավարությունը բաց թողեց չոգենավը նավահանգստից, պատրվակ բռնելով գործի շահը, փոխադրումների պլանի կատարման անհրաժեշտությունը և այլն: Իսկ իրոք չոգենավը խորտակվեց բացահայտ անփութության կամ ուղղակի վնասարարության հետևանքով: Պատահական չե, վոր Կասպից չոգենավային վարչության մեջ ընդունված եր այն վնասարարական թեորիան թե «նավերը պետք ե աշխատեցնել «մինչև մաշվելը», թե չոգենավի միայն «սիրտը», այսինքն մեքենան պիտի լավ պահել, իսկ մնացածը յերկրորդական ե: Հայտնի յե, վոր ամեն մի օրգանիզմի մեջ սիրտը— դա ամեն ինչ ե, յեթե սիրտը դադարի աշխատելուց, ապա ինչպիսի պատյանի տուփի մեջ ել նա լինի, բանը բուրդ ե: Դրա համար ել պետք ե խնամել «սիրտը», պետք ե ապահովել, վոր մեքենան բոլորովին կանոնավոր լինի: Դա ճիշտ ե: Մեքենան պիտի որինակելի վիճակի մեջ լինի, բայց վոչ թե ի հաշիվ կորպուսի: Իսկ վնասարարական թեորիան



հենց նրանումն ե կայանում, թե պետք ե խնայել սիրտը, չհոգալով կորպուսի մասին: Այս թեորիայի հետևանքը յեղավ այն, վոր չոգենավերը հիանալի նոր մեքենաներ ունեյին, իսկ հատակները շատ վատ եյին և նավերը լողում եյին խորտակման վտանգի տակ: Ահա և «Խորհրդային Հայաստան» չոգենավը խորտակվեց:

Այստեղ ել իհարկե վնասարարություն կար:

Անցյալ տարի հյուսիսային ջրային ավազանում, Լենինգրադում, մի այսպիսի դեպք տեղի ունեցավ: Գարնանը հենց վոր բացվեց Նեվան, դեռ դուրս յեկավ մեր չոգենավերի մի ամբողջ քարավան, թվով տասնյերկու հատ: Չնայած ըստ պլանի նախատեսված եր, վոր ապրիլի 5-ից շուտ բեռնված նավեր չպիտի գործի գցել, բայց թե չոգենավային վարչությունը, Բրոնշտեյնի ղեկավարությամբ, նավագնացությունն սկսեց մարտի կեսին:

Առաջին յերեք նավերը, վոր հենց նոր եյին գնված արտասահմանում և այն բեռնել եյին նորմայի դիմաց 30–40 տոկոս, վնասվածքներ ստացան և անմիջապես նո-

րոգման գնացին: Նույն վիճակի մեջ ընկան նաև մնացած 9 շոգենավերը:

Դրա հետևանքը յեղավ այն, վոր անտառանյութով բեռնված մի դյուժին նավ նեղության մեջ ընկան. սառույցը նրանց ճմռեց, դրանք— նպատակին չհասան, տասնյերկու շոգենավ նորոգման գնաց, տնտեսական ոպերացիան վիժեց: Պարզվեց, վոր Լենինգրադում Հյուսիսային գետային շոգենավային վարչության գլուխ կանգնած Բրոնշտեյնը տրոցկիստ եր, վորը, իր այլ գործակիցների հետ մերկացվելով, բաց արավ իր քարավանի այս «սառցային արշավի» իսկական պլանը, վորի նպատակն անտառանյութերի վաղ փոխադրման ոպերացիան վիժեցնելն եր:

Ցակիրի, Տուխաչևսկու և այլ դավաճանների գործով ինչպես հայտնի յե դատապարտվեց և գնդակահարվեց Եյդեմանը, իր ժամանակին Պաջը-Ավիաքիմի Կենտխորհրդի նախագահը: Այժմ բացվել են նրա խոշոր չարարկումները Կոսարևի անվան Կենտրոնական աերոակումբի շինարարության մեջ: Պարզվեց, վոր 1937 թվի շինարարական պլանը յերեք վարիանտ ուներ: Հենց դա միայն ցույց ե տալիս, թե



վորքան «լավ» եր տարվում շինարարությունը: Վերջին վարիանտը հաստատված եր 1937 թվի մարտի 13-ին: Բայց ուշ հաստատման հետևանքով առաջին կվարտալի ֆինանսավորումը բանկում չեր ձևակերպված, անտառանյութ ու ցեմենտ չեր ձեռք բերված: Կառուցման աշխատանքները վիժեցին:

1936 թվի աշխատանքների պլանով նախատեսված եր կենտրոնական ջրհան կայան կառուցել դրենաժային հորերից ջուր քաշելու համար: Նախագիծը հաստատված և 1936 թվի հունիսին, բայց մինչև 1936 թվի սեպտեմբերին պարզվեց, վոր աշխատանքային գծագրեր չկան: Վերջնական գծագրերը պատրաստվեցին 1937 թվին: Դրա հետևանքը յեղավ այն, վոր իր ժամանակին շինարարություն չձեռնարկեցին, դրենաժի խողովակներն ավազով լցվեցին, այժմ պետք ե ամեն ինչ նորից սկսել:

Շինարարության մեջ կորել են մի շարք նախագծեր և նախահաշիվներ, վորոնք շատ կարեվոր նշանակություն ունեն: Այս մասին Եյդեմանը լռություն եր պահպանում: Զղջալով իր մեղքերն իրոք, սակայն իր հանցագործությունների մի ամբողջ սար բաց չարեց:

1936 թվին Պաջը-Ավիաքիմի կենտրոնական խորհրդի նախագահությունը Տուչինյան աերոդրոմի համար ծախք դուրս գրեց 3 միլիոն ռուբլի, վորպես թե կապիտալ ներդրում ե արված Թուխչքի դաշտում: Այժմ պարզվեց, վոր կապիտալ այդ ներդրումները վոչ մի փաստաթղթով չեն հաստատված: Չի բացառված, վոր այս 3 միլիոնն ամբողջովին կամ մասամբ ծախսված ե բանդիտային այս խմբի հանցագործ նպատակների համար:

Այսպես են «աշխատում» մեր թշնամիները:

Բացված ե մի այսպիսի վրդովեցուցիչ փաստ: Հացահատիկային վորոշ պահեստներում կրծողներին թունավորելու համար փոսֆոր- ժելատինային հրապույրի տեղ ինքնաբռնկող նյութ ե հայտաբերված: Մի քանի վայրերում հրդեհները լիկվիդացիա արին պահեստի աշխատողները: Այդտեղից հեռացրին փոսֆոր- ժելատինային հրապույրը: Ինչպես տեսնում եք, դիվերսանտները վոչ մի բանի առաջ կանգ չեն առնում:

Վերևում ասվածը բոլորովին դեռ չի սպառում, իհարկե, մեր ժողովրդի թշնա-



միների հանցագործ և ստոր գործունեյության բոլոր ձևերն ու մեթոդները:

Կարելի յե այլ փաստերի շարք բերել, վորոնք վկայում են, թե վորքան անսահման ե մեր թշնամիների ստորությունն ու նենգությունը, նրանք միջոցների մեջ խտրություն չեն դնում, չեն զարշում վոչ մի բանից, վոչ իրենց հանցագործությունների զազրելիությունից և ցինիկ նողկալիությունից:

***

Մեր խնդիրը թշնամուն անշեղորեն մերկացնելն ե, նրա հանցագործ մեքենայությունների անշեղորեն քողազերծ անելն ե: Մեր խնդիրն ե հասարակական աչալրջությունը մոբիլիզացիա անել և ստեղծել հասարակական գիտակցության այն անմատչելի, հզոր պարիսպը, վոր վոչ մի հետախույզի և վնասարարի թույլ չի տա մեր շարքերը թափանցել:

Կոմունիստական Ինտերնացիոնալի 3-րդ կոնգրեսում Լենինը հետևյալն եր ասում մեր թշնամիների մասին.

«Այդ մարդիկ բազմապիսի փորձեր են անում, նրանք շատ ճարպիկ կերպով ոգտագործում են ամեն դեպք, վորպեսզի այս

կամ այն ձևով հարձակվեն Խորհրդային Ռուսաստանի վրա և մասնատեն նրան: Զափազանց ուսանելի կլիներ,— և յես կարծում եմ, որ օտարերկրյա ընկերներն այդ կանեն,— սիստեմատիկորեն հետևել այդ ռուսական հակահեղափոխության կարևորագույն ձգտումներին, կարևորագույն տակտիկական յեղանակներին, կարևորագույն հոսանքներին: Ռուսական հակահեղափոխությունն աշխատում է, գլխավորապես, արտասահմանում, օտարերկրյա ընկերների համար առանձնապես դժվար չի լինի հետևել այդ շարժմանը: Մի քանի տեսակետով մենք պետք է դաս առնենք այդ թշնամուց: Այդ հակահեղափոխական էմիգրանտները շատ իրազեկ են, հիանալի կերպով կազմակերպված են, լավ ռազմագետներ են, և յես կարծում եմ, որ սիստեմատիկ համեմատությունը, սիստեմատիկ ուսումնասիրությունն այն բանի, թե ինչպես են նրանք կազմակերպվում և ինչպես են օգտվում այս կամ այն դեպքից, կարող է բանվոր դասակարգի վրա ահագին ազդեցություն ունենալ պրոպագանդի տեսակետից: Այս ընդհանուր թեորիա չէ, այս գործնական քաղաքականություն է, և



այստեղ յերևում է, թե ինչ է սովորել թշնամին: Ռուսական բուրժուազիան վերջին տարիները սարսափելի պարտություն է կրել: Գոյություն ունի հին թևավոր խոսքն այն մասին, թե ջարդված բանակը շատ բան է սովորում: Ջարդված ռեակցիոն բանակը շատ բան է սովորել, շատ լավ է սովորել: Նա սովորում է մեծագույն ագահությամբ, և նա իրոք խոշոր հաջողություններ է ձեռք բերել: Այն ժամանակ, յերբ մենք մի գրոհով վերցրինք իշխանությունը, ռուսական բուրժուազիան անկազմակերպ էր, քաղաքականորեն տըհաս: Այժմ, յես կարծում եմ, նա կանգնած է ժամանակակից արևմտա-յեվրոպական զարգացման բարձրության վրա: Մենք պետք է հաշվի առնենք այդ, մենք պետք է լավացնենք մեր սեփական կազմակերպությունները և մեթոդները, և պետք է հասնենք դրան բոլոր ուժերով: Մեզ համար համեմատաբար հեշտ էր, և յես կարծում եմ, որ մյուս հեղափոխությունների համար ևս համեմատաբար հեշտ կլինի այդ յերկու շահագործող դասակարգերի հետ հաշիվներ տեսնելը»[1]):

[1]) Լենին, Յերկեր, հ. 26, էջ 646–7:

Լենինի այս ցուցումներն ընկեր Ստալինի ցուցումների հետ միասին մեզ համար վճռական նշանակություն ունեն: Նրանք պարտավորեցնում են մեզ, վոր մենք ուշադիր կերպով ուսումնասիրենք մեր հայրենիքի, բանվորների ու գյուղացիների, մեր սոցիալիստական պետության թշնամիների պայքարի պրակտիկան և տեխնիկան: Մենք պետք է ուսումնասիրենք հետախուզական մարմինների պայքարի պրակտիկան և տեխնիկան, սկսած գործակալների հավաքագրումից մինչև նրանց հանցավոր գործունեության կազմակերպումը, մի գործունեություն, վոր ուղղված է մեր սոցիալիստական հայրենիքի շահերի դեմ վնասարարության, լրտեսության, դիվերսիայի և տեռորի ուղղություններով: Մենք պետք է կարենանք տիրապետել մեր թշնամիների պայքարի ամբողջ տեխնիկային, վորպեսզի իր ժամանակին և արմատապես ճանաչենք ու վորոշենք այն բոլոր մեթոդներն ու միջոցները, վորոնց ոգնությամբ նրանք մեր դեմ պայթեցման աշխատանք են տանում, վորպեսզի անողոք ու անվրեպ կերպով ջախջախենք թշնամուն, արմատախիլ անենք նրան, վոչնչացնենք թշնամական մեքենայությունները:



Տարաբախտաբար դեռ շատ բան պիտի անենք, վոր ասենք, թե մենք լրիվ չափով տիրապետել ենք այդ տեխնիկային: Մենք աջ ու ձախ աններելի բերանբացություն ենք անում: Ահա, որինակ, վերջերս յեկեղեցականները խորհրդային իշխանության դեմ հակահեղափոխական ագիտացիա և պրոպագանդ ծավալեցին, նոր Սահմանադրությամբ քողարկվելով:

Վերջերս յեկեղեցականներն աշխուժացրին իրենց գործունեությունը: Մի տեղ նրանք «գտել են» «սուրբ Վասյա», մի այլ տեղում՝ «Բարեկտոն Վարվարա»: Դրանք մեծ մասամբ կիսախելագար դեգեներատներ են, վորոնց «սուրբ» են դարձնում և այս կերպ խարդախ մանիպուլյացիաներ են անում, խաբելով և շահագործելով տգետ մարդկանց: Նրանք խաղում են բնակչության առավել հետամնաց մասի հնության մնացորդների, կրոնական պաշարմունքների վրա:

Այս հանցավոր գործունեությանը մենք բավարար չափով չենք հակադրում մեր պրոպագանդան: Թշնամին հմտությամբ ոգտվում է մեր անհոգությունից:

Կբերեմ մի որինակ, վոր վերցված է

կույբիշևյան մարզային դատախազի հատուկ զեկուցագրից։

1936 թվի հունիսի 30-ին Կույբիշևում, Տրոյիցկու շուկայում նկատվեց մուրացկան Գ.Ս. Սորոկովը, որը հայտնի յեր վորպես խուլ ու համր։ Նա նստում եր շուկայում և համեստորեն ողորմություն եր խնդրում։ Նրա կրծքի վրա տախտակի կտոր եր կպցրած հետևյալ մակագրությամբ. «Քաղաքացիներ, օգնեցեք խուլ ու համրին, մերկացրին, տկլորացրին, իսկ այժմ աշխատանք չեն տալիս»։ Մեկն ուշադրություն դարձրեց այս հակախորհրդային ագիտացիայի վրա։ «Մուրացկանին» միլիցիա բերին, և պարզվեց, որ նա բոլորովին խուլ չի և բոլորովին ել համր չի։ Դուրս յեկավ, որ նա կուլակաթափված է և հակախորհրդային ագիտացիայի այդպիսի ուղի յե ընտրել։ Նրա գրպանում տասնյակ այնպիսի տախտակներ գտան, մակագրության նույն տեքստով։ Յերբ նրան հարցրին, թե ինչ եր ուզում անել այդ տախտակները, նա պատասխանեց, թե յեթե վորևե մեկին հարկավոր լիներ, կըտար։

Ահա ձեզ հակահեղափոխական ագիտացիայի և հակահեղափոխական պրոկլամացիայի մի ձև։



Միջազգային կացության պայմանները շատ բարդ են։ Կապիտալիստական յերկրների միջև հակասություններն օրեց օր ավելի յեն սրվում։ Ավելի ու ավելի յեն սրըվում սոցիալիստական նոր հարաբերությունների մարմնացումն հանդիսացող մեր սոցիալիստական պետության և կապիտալիստական աշխարհի յերկրների ու առանձնապես ռեակցիոն, ֆաշիստական ու կիսաֆաշիստական յերկրների միջև յեղած հակասությունները։ Դրանք աճում են ամսեամիս, պատերազմի ավելի ու ավելի մեծ սպառնալիք են առաջ բերում։ Այսպիսի պայմաններում ծայր աստիճան աչալրջություն և բոլշևիկիզմին տիրապետելու առավելագույն հմտություն է հարկավոր, վորի դրոշի տակ մենք հաղթել ենք մինչև այժմ և կհաղթենք այսուհետև։

Մենք պետք է սովորենք բոլշևիկորեն վերաբերվել և՛ շրջապատի պարագաներին, և՛ մարդկանց, իսկ դա նշանակում է չարունակ խոհունություն, սրաթափանցություն, զգոնություն և կոփվածություն յերևան բերել։

Ամենուրեք և ամեն տեղ, աշխատանքի ժամանակ, ծառայության պայմաններում, պաշտոնական պարտականությունները կատարելիս, առօրյա կյանքում մենք չպետք է մոռանանք մեր թշնամիներին, նրանց նենգությունը, ուխտադրժությունը, նրանց այն ընդունակությունը և պատրաստակամությունը, վորով նրանք մեր դեմ են դուրս բերում և հենց այժմ էլ գործադրում են պայքարի ամենասուր միջոցները: Այդ նրանք արել և կանեն էլ այսուհետել:

Մենք չպետք է մոռանանք այդ և դրա մասին հիշեցնենք նաև ուրիշներին: Շատ դժվարություններ ենք մենք հաղթահարել մեր կուսակցության իմաստուն և հանճարեղ ղեկավարության շնորհիվ, կուսակցության, վորն ընթանում է այն ուղիով, վոր մատնանշել են մեր մեծ ուսուցիչներն ու առաջնորդները՝ Լենինը և Ստալինը:

Մեր Կենտկոմի մեծ ուսուցիչ և առաջնորդ ընկեր Ստալինի ղեկավարությամբ՝ մենք վերջնականապես կհաղթենք և կջախջախենք մեր թշնամիներին առանց մնացորդի:

---

ՈՒՂՂՈՒՄ

20-րդ էջի 4-րդ տողում դատավարությունը կարդալ դավաճանություն; 68



ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն—«Խորհրդ. Հայաստան»

Շ ա ր ո ւ ն ա կ վ ո ւ մ է 1937 թ.

բաժանորդագրությունը

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ“

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ

Հ Կ (բ) Կ Կենտկոմի կուլտպրոպագանդայի և ագիտացիայի բաժնի հրատարակություն

ԲԱԺՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . . 6 ռուբ.

6 » . . 3 »

3 » . . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝ «Սոյուզպեչատ»-ի քաղաքային, շրջանային բյուրոներին և փոստի բաժանմունքներին: